

Քրիստինե Աղալարյան 12:12, 1 դկտ 2008

# Պատմական ակնարկ Նորաշենի Սուրբ Աստվածածին եկեղեցու մասին

Վրաստանի տարածքում հաշվարկված է մոտ 650 հայկական եկեղեցի: 19-րդ դարում միայն Թիֆլիսում եղել են հայկական 29 եկեղեցիներ, այսօր մնացել են 2-ը:

Մինչ օրս չլուծված է մնում խորհրդային ժամանակաշրջանում բռնագրավված հայկական 6 եկեղեցիների պատկանելության խնդիրը՝ Թբիլիսիի Սուրբ Նորաշենը (XV դար), Սուրբ Նշանը (XVIII դար), Շամխորեցոց Սուրբ Աստվածածինը (երկրորդ

անվանումը՝ Կարմիր Ավետարան, XVIII դար), Երևանցոց Սուրբ Մինասը (XVIII դար) և Մուղնի Սուրբ Գևորգը (XIV դար), ինչպես նաև Սամցխե-Ջավախք տարածաշրջանում՝ Ախալցիխայում գտնվող Սուրբ Նշան եկեղեցին (XIX դար):

Նորաշենի Սուրբ Աստվածածին եկեղեցին գտնվում է Թբիլիսիի կենտրոնական և հնագույն թաղամասում՝ Մեյդան հրապարակի հարևանությամբ, ներկայիս Լեսելիձեի անվան փողոցում, վրաց առաջնորդանիստ սբ. Սիոն և հունական Ջվարիս մամա եկեղեցիների հարևանությամբ: Նորաշենի անվանումը հայկական ծագման է և նշանակում է՝ նոր կառույց:



Նորաշենի Սուրբ Աստվածածին եկեղեցին հիմնադրվել է 1467թ. ոմն Սադաբի կողմից՝ ի հիշատակ իր հոր՝Սուլթանի, պապի՝ Թավաքալի, կողակցի՝ Վիշելի, Նարիմանի, Շարիմանի և այլոց: 1650 թ. Խոջա Նազարը վերակառուցել է արդեն քայքայված եկեղեցին: Գմբեթն էլ կառուցել է ուստա Պետրոսը: Պատմական վկայությունները փաստում են, որ եկեղեցին մշտապես վերանորոգվել է հայերի կողմից՝ 1795-ին՝ Բեհբուդյան Մելիք-Ավետիքի հրամանով և Գրիգոր քահանայի նախաձեռնությամբ, 1808-ին՝ գործակալ Տեր-Ղազարի և պրն Մունթյանի գլխավորությամբ, հատկապես Աղա Մահմադ խանի ավերիչ արշավանքներից հետո:

Ներսես կաթողիկոսի թույլտվությամբ 1875 թ.վերանորոգվել է եկեղեցու կղմինդրե տանիքը, իսկ 1897 և 1900թթ.  նորոգումներ են իրականացվել շենքի ներսում: Նորաշենի Սուրբ Աստվածածին եկեղեցու հայ և օտարազգի այցելուների թողած գրություններում հիշատակվում է որպես Տփղիսի գլխավոր հայկական եկեղեցիներից մեկը: Մինչև 1989 թ.

այդ փաստը չեն թաքցրել նաև վրաց ուսումնասիրողները:

Թբիլիսիի հայերի բազմաթիվ սերունդներ կնքվել են Նորաշենում, դրա պատերի տակ հանգչում են Թիֆլիսի հարգարժան քաղաքացիների՝ Թումանով, Թամամշև, Վարթանով, Պրիդոնյան իշխանների աճյունները: Այստեղ հանգչում է այս եկեղեցու ավագերեց Բաժբեուկ-Մելիքովի աճյունը:

Խորհրդային տարիներին և մինչև 1931 թ. Նորաշենի Սբ. Աստվածածին եկեղեցին գտնվում էր թեմական խորհրդի իրավասության ներքո: Այնուհետև եկեղեցու շենքը վերածվում է գրապահոցի: 1962 թ. դրությամբ, Մոսկվայի և Կիևի հնատիպ գրականության պահոցներից հետո, Նորաշենի Սբ. Աստվածածին եկեղեցին երրորդն էր համարվում:

**Վրացականացման փաստեր**



1983 թ.-ից սկսվել են Նորաշենի Սուրբ Աստվածածնի «բարեփոխումները». եկեղեցու մերձակայքի և Լեսելիձե փողոցի բարեկարգման աշխատանքների ընթացքում, որն իրականացնում էին Վրաստանի հուշարձանների պահպանության գլխավոր վարչության աշխատակիցները քաղաքի գլխավոր ճարտարապետ Շ. Կավլաշվիլու ղեկավարությամբ, քանդում են եկեղեցու հյուսիսային արձանագիր շքամուտքը՝ որպես «ճարտարապետական ավելորդություն»: 1989 թ. հուշարձանների պահպանության վարչության

փոխտնօրեն Ջանսուգ Բաբունաշվիլին առաջին պաշտոնատար անձն էր, ով Նորաշենի եկեղեցին  հայտարարեց իբրև վրաց ուղղափառ եկեղեցի՝ կառուցված 13-րդ դարում:

1994-ից Նորաշենի նկատմամբ ոտնձգությունները շարունակական բնույթ են կրում: Նույն թվականի դեկտեմբերի 29-ին եկեղեցուց սկսել են դուրս բերել գրքերը: Այդ առիթով Թբիլիսի է մեկնում հայ մտավորականների խումբը, որը հանդիպում է Իլիա կաթողիկոսի քարտուղար Թեոդորոս Ջոխաձեին: Թեոդորոս Ջոխաձեն հայտարարում է, որ վրացական Սիոնի հարևանությամբ անթույլատրելի է հայկական եկեղեցու գոյությունը: «Մենք այն պետք է դարձնենք վրացական»,- ասել է կաթողիկոսի քարտուղարը:

1995 թ. փետրվարի 15-ին վրացի հոգևորականները վրացական եկեղեցու ծիսակարգով օծում են եկեղեցին՝ անվանելով այն Խարեբա (թարգմանաբար նշանակում է՝ ավետյաց):

1994-ից, հատկապես 1995-ից մինչ օրս, մեծ թափով ընթանում են եկեղեցու հայկական նշանների՝ մկրտարանի ավազանի, բարձր բեմի, պատերում ագուցված խաչքարերի, հայերեն արձանագրությունների, որմնանկարների անհետացման և իբրև «վերականգնման» աշխատանքները:



«Հայկական ճարտարապետությունն ուսումնասիրող» ՀԿ-ի երևանյան գրասենյակի ղեկավար Սամվել Կարապետյանի ուսումնասիրություններով՝ բոլոր եկեղեցիները Վրաստանում վրացականացվել են վերականգնման պատրվակի ներքո և հստակ ընտրված եղանակներով: Այսպես՝ հայոց եկեղեցիների խորանը՝ սուրբ սեղանով հանդերձ, աղոթասրահի հատակից մոտ 80 սմ բարձր է, և երկու կողմից աստիճաններ կան, որոնք տանում են դեպի խորան: Վրաց եկեղեցին, ինչպես հույն և օրթոդոքս եկեղեցիներն ընդհանրապես, նման բեմ չունի: Հայ եկեղեցիները յուրացնելու ժամանակ վրացիները նախ քանդում, հողին են հավասարեցնում բեմը: Հյուսիսային պատի մեջ հայկական եկեղեցիները ունեն մկրտարանի ավազան, որը, սովորաբար, միակտոր քարից է: Վրաց եկեղեցին նույնպես ունի մկրտության ծեսը, բայց նրանց մկրտարանը շարժական թաս է: Այդ անշարժ շինությունը նրանք չունեն, դրա համար էլ ոչնչացնում են մկրտարանի ավազանը: Հետո հերթը հասնում է բոլոր վիմագիր ու փորագիր արձանագրություններին և որմնանկարներին:



1995 թ. մարտի 13-ին Վրաստանի հայ համայնքի հրավերով Թբիլիսի են մեկնում Գարեգին և Գրիգորիս արքեպիսկոպոսները, Եզրաս վարդապետը և Մարդու իրավունքների հանձնաժողովի նախագահ Ռ. Պապյանը: Նրանք հանդիպում են Իլիա 2-ի հետ և

համաձայնում որոշ ժամանակով փակել եկեղեցին, ստեղծել հայ եւ վրաց մասնագետներից բաղկացած հատուկ խումբ, որոնք կհետազոտեն եկեղեցու պատկանելության հարցը: Մինչ օրս եկեղեցին պետք է քննի:

### Տարիել Սիկինճելաշվիլու ոդիսականը



2005 թ. գարնանը Նորաշեն եկեղեցու հարավային պատին կից հանկարծ հայտնվում է նոր գերեզմանոց՝ 5 վրացերեն արձանագրություններով տապանաքարեր, որոնց թվում ոմն Մաղլակելիձեի շիրմաքարը՝ վախճանված 1874 թ.: Սամվել Կարապետյանը նշում է, որ համաձայն Վրաստանում վրաց ազգատոհմերի բնակության վայրերը մատնանշող մի հետազոտության՝ ողջ Վրաստանում Մաղլակելիձեներ բնակվել են միայն մի քանի բնակավայրերում, այդ թվում՝ Դուշեթի շրջանի Մլեթի գյուղում, ուր մինչև հունական Ջվարիս մամա վրացականացված եկեղեցու հոգևոր հովիվ նշանակվելը քահանա էր եղել հայր Տարիելը:



«Սրանից հետևում է, որ Նորաշենի եկեղեցու վրացականացմանը նպաստելու կոչված տապանաքարերը հայր Տարիելը փոխադրել էր իր հովվությանը վստահված Մլեթի գյուղի գերեզմանոցից»,-հաստատում է Սամվել Կարապետյանը:

**Ոտնձգությունները շարունակվում են՝ վերջին դեպքերը**

2008 թվականի մայիսին Վրացական Ուղղափառ Եկեղեցու քահանա հայր Տարիել Սիկինչելաշվիլու անմիջական ղեկավարությամբ սկսվեց Նորաշենի շուրջ ցանկապատի կառուցումը, որը զարդարվում է բացառապես Վրացական Ուղղափառ Եկեղեցուն բնորոշ խորհրդանիշներով ու խաչերով: Ցանկապատման պատրվակով հոկտեմբերի 22-ին «Սուրբ Նորաշեն» հայկական եկեղեցու և նրա հարակից տարածքի դեմ կատարված ոտնձգություններից հետո, բազմաթիվ դիմում-բողոքների և հայ համայնքի ջանքերի շնորհիվ, Թբիլիսիի քաղաքապետարանը որոշում է կայացրել ապամոնտաժել ցանկապատը, որը մինչ օրս չի արվում: Հակառակ դրան՝ ցանկապատը շարունակվում է կառուցվել:



Վերջապես, նոյեմբերի 16-ին հայր Տարիելի գլխավորությամբ Վրաց Ուղղափառ Եկեղեցու ներկայացուցիչները ծանր տեխնիկայի օգնությամբ փորձ արեցին տեղահանել Նորաշենի բակում հանգչած թիֆլիսահայ բարեգործներ Թամամշյանների ընտանիքի

ներկայացուցիչներ Միքայել Իվանի Թամամշյանի և Լիդիա Պետրոսի Թամամշյանի շիրմաքարերը, որոնք արդեն ավելի քան 100 տարի է թաղված են Նորաշեն եկեղեցու բակում: Տարիել քահանա Սիկինճելաշվիլին այդ քայլը կատարել էր՝ «եկեղեցու շրջակայքը բարեկարգելու և տարածքը «աղբից մաքրելու» իր սեփական նախագծի շրջանակներում»:

Հայ համայնքի ջանքերով հաջողվել է շիրմաքարերը կրկին տեղը դնել և տարածքից դուրս բերել ծանր տեխնիկան: Սակայն հայր Տարիելը դրա համար որևէ պատիժ չի կրել: Վերջին դեպքը բավական մեծ աղմուկ առաջացրեց մամուլում, և եղան արձագանքներ տարբեր օղակներից: Վրացական լրատվամիջոցները հայկական եկեղեցիների խնդիրը մշտապես այնպես են ներկայացնում, որ հայերը ինչ-որ պահանջներ են առաջադրում վրացական եկեղեցիների նկատմամբ՝ հայկական ծագումն ապացուցելու որևէ փաստաթուղթ չունենալով: Իսկ Նորաշենի վերջին դեպքերի կապակցությամբ վրացական մամուլը գրում է, որ հայերի ոգևորությունը  ռուսների «լիցքավորման» արդյունքն է, հատկապես վերջին վրաց-ռուսական պատերազմից հետո:

Նախորդ դեպքերի ժամանակ էլ աղմուկ էր բարձրացել, իսկ հետևանքը եղավ շիրմաքարերի տեղահանումը: Հնչեցին մեղադրանքներ ոչ միայն Վրաստան իշխանությունների ու Վրաց Ուղղափառ եկեղեցու ագրեսիվ պահվածքի, այլև ՀՀ իշխանությունների և Մայր Աթոռի պասիվության, երբեմն նաև՝ թիֆլիսահայ համայնքի պասիվության ու հստակ պահանջներ չներկայացնելու վերաբերյալ:

*Պատմական տվյալները և լուսանկարները «Հետքին» տրամադրել է Սամվել Կարապետյանը*

**#Թբիլիսիի Նորաշեն եկեղեցի**